«Մ Ա Տ Ե Ն Ա Դ Ա Ր Ա Ն»
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# Բ Ա Ն Բ Ե Ր
# Մ Ա Տ Ե Ն Ա Դ Ա Ր Ա Ն Ի

## 10

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
Ե Ր Ե Վ Ա Ն 1 9 7 1

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## Հոդվածներ



## Բնագրեր



## Մատենագիտություն



## Բանաքննություն

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 10 1971

ԽՈՍՐՈՎ ԹՈՐՈՍՅԱՆ

# ԴԱՏԱՐԱՆԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Քննվող հարցի շուրջ մեր մատենագրության մեջ եղած տեղեկությունները խիստ սակավ են ու կցկտուր, ուստի միջնադարյան Հայաստանի դատարանի ներքին կառուցվածքը լիակատար մանրամասնությամբ ուրվագծել հնարավոր չէ։*

*Հետաքրքրող տվյալների մեծագույն մասը տալիս է Մխիթար Գոշի «Դատաստանագիրքը»։ Այդ պատճառով դատարանի ստորև ներկայացվող կառուցվածքը վերաբերում է առավելապես զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանի դատարանին։ Կիլիկյան թագավորության դատարանի կառուցվածքը առանձին հարց է, որին այստեղ անդրադառնալը մեր նպատակից դուրս է։*

*Խնդրո առարկա տեղեկությունները, որ կան Դատաստանագրքում, վերաբերում են գլխավորապես հոգևոր դատարանին, ավելի ճիշտ՝ դրա հիմնական օղակը հանդիսացող եպիսկոպոսական դատարանին։ Աշխարհական դատարանի վերաբերյալ տվյալները շատ ավելի աղքատ են ու կցկտուր։ Այդ հանգամանքը թելադրում է, որ հայկական դատարանի կառուցվածքը պատկերելու ներկա փորձը կատարվի հոգևոր դատարանին վերաբերող փաստերի հիման վրա և հենց այդ դատարանի օրինակով։ Դրանով միաժամանակ պարզված կլինի նաև աշխարհական դատարանի կառուցվածքը իր հիմնական գծերով։ Այս ենթադրությունը հիմնված է գիտության մեջ վաղուց նկատված այն իրողության վրա, որ, ինչպես ամենուր, այնպես էլ Հայաստանում, եկեղեցական դատարանը կառուցված էր ըստ օրինակի աշխարհական դատարանի։*

*Դատարանի կառուցվածքին վերաբերող հարցերին անցնելուց առաջ անհրաժեշտ է նկատի ունենալ, որ քննվող ժամանակաշրջանի դատարանային համակարգը Հայաստանում ներկայանում է հետևյալ կերպ.*

**Պետական դատարաններ.** *թագավորական (իշխանապետական), իշխանական և ստորին դատարաններ։*

**Ֆեոդալական դատարաններ.** *դասային, տերունական։*

**Հոգևոր-եկեղեցական դատարաններ.** *կաթողիկոսական, եպիսկոպոսական, քահանայական։*

*Զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանի հայկական դատարանի ստորև ներկայացվող կառուցվածքը հիմնականում վերաբերում է առաջին և երրորդ խմբի դատարաններին։*

*Դատարանի կառուցվածքի մասին Դատաստանագրքում եղած փաստերը վերաբերում են հիմնականում երեք կետի. ա) դատարանի կազմը, անդամների իրավունքներն ու պարտականությունները, մյուս պաշտոնյաները, բ) դա-*

տավորի անձն ու բարոյական հատկությունները, գ) դատավորի վարձատրությունը։

**Դատարանի կազմը**: Դատական ատյանը միանձնյա չէ։ Դատավորը պետք է «երկու կամ երեք առ ինքն կալցի արս իմաստունս եւ նոքօք դատեսցի ըզդատաստանն»[1], կամ՝ «Եւ դատաւորին պարտ է ոչ առնուլ զդատաստանն ինքն միայն, այլ կամ բազմօք, եւ եթէ այս ոչ հանդիպի, երկուս կամ երիս արս փորձած գիտնականս ունել ի դատաստանին եւ ապա հատանել դատաստան»[2]։ Իհարկե, դատարանը կարող էր և իրականում, հավանաբար, հանդես է եկել նաև ի դեմս մեկ անձի՝ իշխանի, եպիսկոպոսի և այլն, բայց սովորականն այն է, որ դատարանը բազմանձնյա է։

Մխիթար Գոշը ևս դեմ է միանձնյա ատյանին։ Նրա այս դիրքորոշումը, անշուշտ, առաջադիմական է և պայմանավորված ժողովրդամոտ հայացքներով։ Մխիթար Գոշի պատկերացրած բազմանձնյա ատյանի տակ, այնուամենայնիվ, չի կարելի տեսնել մի այնպիսի լայն ներկայացուցչական հաստատություն, որն անտարբեր լիներ հասարակության դասակարգային շերտավորման և դրանից բխող նկատառումների հանդեպ։ Ընդհակառակը, ատենակալները այնպես են ընտրված Մխիթարի կողմից, որ դատարանն, ընդհանուր առմամբ, ապահովում է իշխող խավերի սոցիալ-դասակարգային պատվերի կատարումը։

Միջնադարյան հայկական իրավամտածողությունը ելնում է այն համոզումից, որ «արդար դատաստանն» ապահովելու ավելի ընդունակ է բազմանձնյա ատյանը, քան միանձնյան։ Արդար դատաստանը, սակայն, արդարության դատաստան չէ, այլ դատաստանի արդարություն, որը վճռի մեջ ձևավորվելուց առաջ արդեն կաղապարված է արդարության մասին սոցիալ-դասակարգային պատկերացումների այն միջավայրում, որի ներկայացուցիչները իրականացնում են արդարադատությունը։ Այս հանգամանքը գիտակցվում է, թե ոչ, անկախ դրանից, հաստատապես գիտակցվում է, որ ինքնահաճ կամայականության համար ավելի նպաստավոր է միանձնյա ատյանը։ Արդարությունն ապահովելու մտահոգությունը վերջին հաշվով հանգում է դատական սխալներից երաշխավորված վճիռ ապահովելու հարցին։ Անշուշտ, երբ գործող կողմերը հասարակության տարբեր բևեռների ներկայացուցիչներ են և շոշափվում են «վերինների» ընդհանուր շահերը կամ նրանց հավաքականության կեցության հիմնական պայմանները, օրինականությունը կարող էր հանդես գալ և մերկ կամայականության, զինական-ոստիկանական ուղղակի հարկադրանքի ձևով։ Բայց, գործերի այդ նեղ շրջանակից դուրս, մնացած դեպքերում դատական սխալներից երաշխավորված վճիռը օրինականության հիմքերից մեկն է և իրավաքաղաքական մեծ նշանակություն ունի։ Միջնադարյան մտածողության համաձայն մարդու բնությանը հատուկ է սխալվելը՝ կամա թե ակամա։ Դրա հավանականությունն ավելի է մեծանում, մանավանդ, դատական գործերի քննության ժամանակ, որովհետև, նախ, կողմերից մեկը, որպես կանոն, շահագրգռված է, որ ճշմարտությունը հանդես չգա իր իսկական տեսքով և աշխատում է թյուրիմացության մեջ գցել դատավորին, երկրորդ՝ ինչ-ինչ պատճառներով ինքը՝

1 «Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք հայոց, իրաւաբանական հետազօտութիւնք հանդերձ ծանօթութեամբք, Վահան ծ. վարդապետի Բաստամեանց», Վաղարշապատ, 1880, էջ 31։ Այսուհետև՝ Դատաստանագիրք հայոց։

2 Անդ, էջ 30։

դատավորը կարող է սխալվել կամ անաչառ չլինել։ Սխալվելու հավանականությունը ավելի մեծ է, երբ որոշողը մեկ անձ է։ Ատյանի բազմանձնությունը հիմնված է այս իրավամտածողության վրա։

Դատական ատյանը կազմված է նախագահից և ատենակալներից։ Նախագահը իշխանության այն աստիճանի ներկայացուցիչն է, որի անունով, սովորաբար, կոչվում է դատական տվյալ օղակը (թագավոր, կաթողիկոս, իշխան, եպիսկոպոս և այլն)։ Այդպես պարզ չէ, սակայն, ատենակալների հարցը։ Համաձայն Մխիթար Գոշի Դատաստանագրքի

| Ա խմբագրության | Բ խմբագրության | Գ խմբագրության |
| --- | --- | --- |
| Պարտ եւ պատշաճ իսկ է... դատաւորաց երկուս կամ երիս ունել արս փորձս յորոց եւ իցէ կարգաց[3]։ | Եւ դատաւորին պարտ է... երկուս կամ երիս արս փորձած գիտնականս ունել ի դատաստանին[4]։ | Պարտ և պատշաճ իսկ է դատաւորաց... երկու կամ երեք ունել արս փորձեալս, հաւատարիմս յամենայն կրօնս աստուածայինս, վկայեալս յամենայն բնակչացն[5]։ |

Բ խմբագրության համաձայն, ատենակալները պետք է լինեն փորձառու գիտնականներ։ Ա խմբագրությունից իմանում ենք, որ փորձառու այդ գիտնականները կարող են լինել «յորոց եւ իցէ կարգաց», այսինքն՝ և՝ աշխարհական, և հոգևորական։ Վերջապես, Գ խմբագրությունը նշում է, որ նրանք պետք է «վկայված» լինեն ժողովրդի կողմից, այսինքն լավ համարում ունեցող մարդիկ։

ԱԳ խմբագրությունները մի այլ առիթով նշում են. «Եթէ չիցեն բաւական (Գ՝ եւ եթէ պատահի եպիսկոպոս տխմար այսմ իրի), գործակցաւք վարեսցին՝ աշխարհականաւք, եւ քահանայիւք, եւ վարդապետաւք փորձագունիւք»[6]։ Ըստ այսմ՝ հոգևորականներից ատենակալներ կարող են լինել միայն վարդապետներն ու քահանաները։ Իր հերթին Բ խմբագրությունն էլ օգնում է պարզելու, թե ովքեր կարող էին լինել աշխարհական-ատենակալներ. «Եւ վերագոյն ասացաւ զի վարդապետօք արասցեն դատաստան. եւ թէ այս ոչ իցէ, արասցեն գիտնական քահանայիւք եւ տանուտէրօք»[7]։ Ուրեմն աշխարահականներից ատենակալներ կարող էին լինել տանուտերերը։

Այսպիսով, եպիսկոպոսական դատարանի ատենակալներ կարող էին լինել վարդապետները, քահանաները և տանուտերերը։ Առաջինների հարցը պարզ է, վերջինինը՝ ոչ, որովհետև «տանուտեր» բառը մի քանի նշանակություն ունի։ Մխիթարը չի բացատրում, թե ինչ իմաստով պետք է հասկանալ այդ բառը։ Վ. Բաստամյանցը, ինչպես և պրոֆ. Խ. Սամուելյանը, որ ընդունում է առաջինի կարծիքը, մեկնում է հետևյալ կերպ. «Այս տանուտեր բառը մեր լեզվի մեջ զանազան նշանակություն ունի. առաջին՝ ...սեփական տուն ունեցող..., երկրորդ՝

3 Վենետիկի Մխիթարյան Մատենադարան, ձեռ. № 1237, թ. 27։ Այն հանգամանքների մասին, որոնց շնորհիվ մենք հնարավորություն ունենք օգտվելու այս ձեռագրից, մանրամասն խոսք կլինի այլ առիթով։ Այստեղ շնորհակալությամբ հայտնենք միայն, որ դրա համար պարտական ենք Վենետիկի Մխիթարյան միաբանությանը և հատկապես նրա ընդհանուր քարտուղար հանգուցյալ հ. Եղիա Փիչիկյանին և Հ. Ներսես Տեր-Ներսեսյանին։

4 Դատաստանագիրք հայոց, էջ 30։

5 Մաշտոցյան Մատենադարան, ձեռ № 2776, թ. 14ա.

6 Վենետիկյան ձեռագիր, թ. 23, Մատենադարան, ձեռ. № 2776, թ. 12բ։

7 Դատաստանագիրք հայոց, էջ 27։

նախարար կամ իշխան…, գյուղի մեծավոր կամ կառավարիչ… Սրդ՝ այս երկու վերջին իմաստով տանուտեր բառը հարմարություն ունի մեր հարցի համար» և ենթադրում է, որ Մխիթարը նկատի ունի նախարարներին կամ իշխաններին[8]։ Թվում է, որ «տանուտեր» բառը Մխիթարի ժամանակ էլ ուներ «գեղջավագ» իմաստը[9], ուստի որպես ատենակալ պետք է նկատի ունենալ հենց սրան և գյուղի ազդեցիկ գերդաստանների գլուխ տանուտերերին և ոչ նախարարին կամ իշխանին, որովհետև միշտ չէ, որ իշխանը կարող էր գյուղում լինել և ամեն գյուղում չէ որ կարող էր իշխան լինել, այնինչ գեղջավագ և գերդաստանի գլուխ տանուտեր կար յուրաքանչյուր գյուղում[10]։ Բացի դրանից, իշխանն ինքը դատավոր էր, նման եպիսկոպոսին և հավասար եպիսկոպոսին, ընդդատյա գործերի շատ ավելի լայն շրջանակով, քան եպիսկոպոսը։ Իշխանը չէ, որ պետք է եպիսկոպոսական դատարանի ատենակալ լիներ, այն էլ խորհրդակցական ձայնի իրավունքով։ Սա ընդհանուր կարգն է, որով, իհարկե, չի բացառվում, որ երբեմն իշխանը կարող էր մասնակցել եպիսկոպոսական դատարանին, ճիշտ այնպես, ինչպես որ եպիսկոպոսը՝ իշխանականին։

Խ. Սամուելյանը նշել է[11], որ եպիսկոպոսական դատարանը շարժական բնույթ ուներ։ Եպիսկոպոսի կենտրոնատեղում միշտ էլ կլինեին վարդապետներ կամ քահանաներ, այնպես որ տանուտեր ատենակալի կարիքը չէր զգացվի։ Կենտրոնից հեռու տեղերում է, որ կարող էին չլինել վարդապետներ կամ դիտնական քահանաներ, որոնց և փոխարինելու էր տանուտերը։ Հիրավի, եկեղեցական կանոնների համաձայն, եպիսկոպոսը պարտավոր էր տարին երկու անգամ շրջել թեմում։ Այս շրջագայությունների ժամանակ նա իրականացնում էր նաև արդարադատությունը։

Ի՞նչ իրավասություն ունեին եպիսկոպոսական դատարանի ատենակալները, վճռահատության մասնակցում էին որոշի՞չ, թե խորհրդակցական ձայնի իրավունքով։ Այս հարցին որոշակիորեն պատասխանելու համար Դատաստանագիրքը բավարարաչափ տվյալներ չի տալիս։ Ծանոթանանք այս կարգի փաստերին։

| Ա խմբագրություն | Բ խմբագրություն | Գ խմբագրություն |
| --- | --- | --- |
| *Եպիսկոպոսն, զի նա է դատաւոր, զերկուսն առ ինքեան կալցի*[12]։ | *Եպիսկոպոսն, զի նա է առաջին դատաւոր, երկու կամ երեք առ ինքն կալցի*[13]։ | *Պատուիրեմք դատաւորաց մերոց և եպիսկոպոսաց մերոց, զի միշտ առ ինքեան պահեսցեն ի հաւատարիմ քահանայից երկու կամ երեք*[14]։ |

---

8 Դատաստանագիրք հայոց, Յառաջաբանութիւն, էջ 133. Խ. Սամուելյան. Մխիթար Գոշի Դատաստանագիրքն ու հին հայոց քաղաքացիական իրավունքը, Վիեննա, 1911, էջ 130—131։ Հայկազյան լեզվի նոր բառգիրքը (Վենետիկ, 1837, էջ 843) քննվող բառի երկու իմաստ գիտի՝ 1. Տէր տանն. գլուխ ընտանեաց և գերդաստանի, 2. ցեղապետ, ազգապետ, նահապետ։

9 Դատաստանագրքի հոդվածներից մեկում գեղջավագը կոչված է «գլխաւոր գեղջն»։ Քննվող դարաշրջանին ժամանակամերձ հայկական իրականության մեջ «տանուտեր» հաստատության և առհասարակ տանուտերերի իրավունքների մասին մանրամասն տես Լ. Ս. Խաչիկյանի «14—15-րդ դարերի հայկական գյուղական համայնքի մասին» արժեքավոր և իր տեսակի մեջ գրեթե միակ հոդվածը տպագրված՝ «Պատմա-բանասիրական հանդես», 1958, № 1, էջ 110—133։

10 Տե՛ս Լ. Ս. Խաչիկյան, նշված աշխատությունը։

11 Մխիթար Գոշի Դատաստանագիրքն ու հին հայոց քաղաքացիական իրավունքը, էջ 131—132։

12 Վենետիկյան ձեռագիր, թ 29։

13 Դատաստանագիրք հայոց, էջ 31։

14 Մատենադարան, ձեռ. № 2776, թ. 14բ։

Այս և նման մի շարք վկայություններից ակնհայտ է, որ ատենակալներին ընտրում էր ինքը՝ դատարանի նախագահ ու առաջին դատավոր եպիսկոպոսը։ Այս հանգամանքն արդեն, ինքնին, ինչ-որ չափով սահմանափակում է ատենակալների իրավունքը և հատկանշում նրանց կախվածությունը եպիսկոպոսից։ Բացի դրանից, ատենակալներին իր հայեցողությամբ ընտրելու հնարավորությունը եպիսկոպոսին թույլ է տալիս նախապես արդեն բարենպաստ պայմաններ ստեղծել իրեն ցանկալի վճիռ կայացնելու համար։ Այնուհետև, ատենակալները մասնակցում են, որպեսզի դատավորը «ի նոցա վճռէն ուսցի զդատաստանն»[15], «զի եւ ինքն ի նոցանէ ուսցի զդատաստան»[16], «նոքաւք կրթիլ և հմտանալ ի գիրս աստուածայինս և ի գիրս դատաստանի»[17]։ Ատենակալների իրավունք-կոչում-պարտականություններից գոնե մեկը, Դատաստանագրքի երեք խմբագրությունների միաձայն այս վկայություններից, պարզվում է. եպիսկոպոսը պետք է գիտուն ատենակալների կողմից կրթվի և հմտանա «ի գիրս աստուածայինս և ի գիրս դատաստանի», պետք է «ի նոցա վճռէն ուսցի զդատաստանս»։ Վ. Բաստամյանցը այս առնչությամբ բացատրում է. «Բայց այս վերջին խոսքը երեք բացատրություն կվերցնե. նախ՝ վճիռ բառը կարելի է հասկանալ խորհուրդ կամ առաջարկություն բառի իմաստով, և այդ իմաստով եպիսկոպոսը ուրեմն ազատ էր ընդունել կամ չընդունել նոցա վճիռը. երկրորդ՝ վճիռ բառը կարելի է հասկանալ յուր իսկական իմաստով և այն ժամանակ եպիսկոպոսը անպատճառ պիտի ընդուներ նորան իբրև մյուս երկու անդամակցի միաձայն կարծիք և ուրեմն նոքա հավասար ձայն ունեին եպիսկոպոսի հետ. և երրորդ՝ ուսցի բառը ցուցանում է, որ եպիսկոպոսը, եթե տգետ էր, պետք է առժամանակ վարժվեր յուր դատավորական պաշտոնի մեջ հմուտ անդամակիցների օգնականությամբ, և այստեղ վճիռ բառը կարող է դարձյալ երկու նշանակություն ունենալ՝ կամ կարծիք, որը եպիսկոպոսը կարող էր չընդունել, կամ որոշումն, որը նա անպատճառ պիտի ընդուներ»[18]։ Անկախ «վճիռ» բառի այս նշանակություններից, ուշադրություն պետք է դարձնել այն հանգամանքի վրա, որ ատենակալների վճռից նովորելու մասին խոսքը վերաբերում է ոչ թե ամեն դատավոր եպիսկոպոսին, այլ միայն նրանց, ովքեր «տգէտ» են դատավարական գործում, «տխմար այսմ իրի»։ Քանի որ խոսքը վերաբերում է նորաթուխ մի թեմակալի կամ դատավորական փորձ չունեցող մի եպիսկոպոսի, ապա իրականության համապատասխան պետք է համարել այն ենթադրությունը, որ նա հմտանալու համար որոշ ժամանակ դատական գործերը վարելու էր ավելի փորձառու և օրենսգետ անձանց հսկողությամբ ու ղեկավարությամբ և այս դեպքում շատ հավանական է, որ ատենակալները գործում էին վճռական ձայնի իրավունքով։ Բայց, հասկանալի է, որ ժամանակավոր այս վիճակով չի բնութագրվում ոչ դատարանի նախագահ եպիսկոպոսի և ոչ էլ ատենակալների իրական իրավասությունը։ Ինչպիսին էր իրերի վիճակը բնական ու սովորական այն դեպքում, երբ եպիսկոպոսը ուներ և՛ դատավորական փորձ և՛ գիտակ էր օրենքներին։

---

15 Դատաստանագիրք հայոց, էջ 27։

16 Անդ, էջ 31։

17 Մատենադարան, ձեռ. № 2776, թ. 14բ։

18 Վ. Բաստամյանց, Յառաջաբանութիւն, էջ 134, ընդգծումները հեղինակինն են։

ԱԳ խմբագրություն

*Վկայս ուղիղ նոցա լինել դատաստանի։ Չի որպէս ոսոխացն հաւատարմանան բանք վկայիւք, սոյնպէս եւ դատաւորաց առանց կարծեաց լիցի դատաստանն վկայիւք*[19]։

Բ խմբագրություն

*Մի՝ զի իրաւամբք լիցի դատաստանն, եւ երկրորդ՝ զի եւ նոքա վկայք լիցին իրաւանց դատաստանին*[20]։

Այս և համանման վկայությունների համաձայն, ատենակալների իրավունքներն ու պարտականությունները հանգում են երկու կետի։ Նրանք մասնակցում են ատյանին, որպեսզի ա) «իրաւամբք լիցի դատաստանն» և բ) «վկայք լիցին իրաւանց դատաստանին»։ Վերջին կետի բովանդակությունը Հ. Կարստը մեկնում է այսպես. «Վկա լինել դատավարության ազնվությանը, որի վրա նրանք պետք է հսկեին և որի ճիշտ ընթացքը պետք է երաշխավորեին»[21]։ Ավելացնենք. «իրաւանց դատաստանին» վկա լինել, հավանաբար, նշանակում է նաև անհրաժեշտության դեպքում հավաստել, որ տվյալ գործը դատաքննության առարկա է եղել և վճիռ է կայացվել, վերհիշել վճռի բովանդակությունը, հաստատել կողմերի կամ վկաների որևէ գործողությունը կամ ցուցմունքը և այլն։ Ինչո՞ւ։ Հավանական են թվում հետևյալ երկու պատճառները. նախ՝ որպեսզի մեկ անգամ արդեն լսված գործը երկրորդ անգամ դատաքննության առարկա չդառնա։ Կողմերից մեկի նման փորձը (օրինակ՝ ի դեպ դատավորի փոփոխության) կարող էր խափանվել ատենակալների վկայությամբ այն մասին, որ տվյալ գործն արդեն լսվել է և այլևս հարկ չէր լինի մի երկրորդ դատավարությամբ ապացուցել, որ գործն, իրոք, քննվել է և վճիռ կայացվել։ Երկրորդ՝ դատական նիստը միշտ չէ, որ արձանագրվում էր, ուստի վերադաս ատյանը գործը վերանայելիս իր տրամադրության տակ համապատասխան նյութեր կարող էր և չունենալ։ Ատենակալները, որպես «իրավանց դատաստանի վկաներ», անհրաժեշտության դեպքում լրացնելու էին այդ բացը։

Ավելի ևս մշուշոտ է առաջին կետի իմաստը։ «Իրաւամբ լիցի դատաստանն» արտահայտությունը կարելի է հասկանալ մի քանի իմաստով։ Այլևայլ իմաստներից բացի սա նշանակում է գործը վճռել գոյություն ունեցող օրենքով։ Միջնադարում, ինչպես վկայում է Մխիթարը և ինչպես դժվար չէ համոզվել թերթելով, օրինակ, Կանոնագիրքը, միևնույն խնդրի վերաբերյալ կային դարերով կուտակված օրենք-կանոններ, երբեմն հակասական ու իրարամերժ։ Այսպիսի պայմաններում անհրաժեշտ օրենքն ընտրելը այնքան էլ դյուրին գործ չէր, և ատենակալները կարող էին օգնել դատավորին այս հարցում։ Թերևս պատճառներից մեկն էլ այդ է, որ Դատաստանագիրքը պահանջում է ատենակալներից օրենքների գիտակություն և այլն։ Ըստ այսմ, ատենակալները միայն խորհրդակցական ձայնի իրավունք ունեն։ Բայց, «իրաւամբ լիցի դատաստանն» նշանակում է նաև, որ գործը վճռվի օրենքով, սովորութական իրավունքի համապատասխան նորմով կամ ընդունված իրավարմբռնման համաձայն և ոչ կամայականորեն։ Ըստ այսմ, ատենակալներն ունեն վճռական ձայնի իրավունք։ Եթե նկատի առնվի, որ դատարանի նախագահը, այնումենայ-

19 Վենետիկյան ձեռագիր, թ. 27, Մատենադարան, ձեռ. № 2776, թ. 14ա։

20 Դատաստանագիրք հայոց, էջ 30։

21 *J. Karst*, Sempadscher Kodex aus dem 13. Jahrhundert.... zwiter Band, Kommentar, Strassburg, 1905, էջ 362։ Այսուհետև՝ Kommentar.

նիվ, եպիսկոպոսն է, թեմում նա է ամենաբարձր հոգևոր պաշտոնյան, որից շատ բանով կախված են մյուս հոգևորականները (այդ թվում և ատենակալները), ապա առանձին դեպքերում եպիսկոպոսը, իհարկե, կկարողանար կայացնել իր ուզած վճիռը։ Բայց և այնպես չպետք է կասկածել, որ ատենակալները, մանավանդ եթե նրանք հեղինակավոր անձինք էին, կարող էին ազդել եպիսկոպոսի վրա, զսպելով միանձնյա որոշողի կամայականությունները և նպաստել, որպեսզի, այնուամենայնիվ, «իրաւամբ լիցի դատաստանն»։

Վերը նակարգրվածը վերաբերում է նաև աշխարհական դատարանին։ Այս դատարանը ևս միանձնյա չէ։ Դատարանի նախագահն է թագավորը (իշխանապետը), իշխանը կամ պաշտոնյա-դատավորը։ Սրանք ևս «աշխարհի դատաստանս հոգայցեն ատենիւ եւ իրաւամբք»[22]։ Դժվար չէ կռահել, որ, օրինակ, թագավորական դատարանի ատենակալներ կարող էին լինել թագավորի անմիջական շրջապատի բարձրաստիճան իշխանավորներն ու բարձրատոհմիկ ազնվականները, իշխանական դատարանի ատենակալները՝ համապատասխան աստիճանի ազնվականներ ու պաշտոնյաներ և այլն։ Ատենակալների իրավունքներն այս դեպքում էլ նույնն են, ինչ որ նախորդ դեպքում էր։ Թագավորը, որպես իշխանության բարձրագույն կրող, իրավականորեն միշտ էլ կարող է իր ուզած վճիռն արձակել։ Ինչ վերաբերում է իշխանին և ստորին դատավորին, ապա առանձին դեպքերում թեև սրանք էլ կարող են իրենց կամքը թելադրել, բայց, ընդհանուր առմամբ, գործը վճռվում է «ատենիւ»։

Դատավորի անձը և բարոյական հատկությունները։ Դատավոր դառնալու համար անհրաժեշտ պայմանները, որ առաջադրում է Դատաստանագիրքը, կարելի է խմբավորել երեք կետի շուրջ. ա) սոցիալական, բ) տարիքային, գ) կրթական-բարոյական։

Հ. Կարստը գրում է. «Դատավորի պաշտոնը օրենքով մատչելի է ընդհանրապես ամեն մի հայորդու, լինի կղերական թե աշխարհական, որը չափահաս է»[23]։ Փաստերը, սակայն, այսպիսի եզրակացության հիմք չեն տալիս։ Նախ, հենց օրենքով դատավոր չէին կարող լինել կանայք։ Բացի դրանից, գիտենք, որ դատավորներ էին թագավորը, կաթողիկոսը, իշխանը, եպիսկոպոսը։ Սրանք բոլորն էլ տիրող դասակարգի ներկայացուցիչներ են ոչ միայն հոգևոր-քաղաքական բարձր իշխանությունը կրելու փաստով, այլև իրենց սոցիալական կեցությամբ։ Ինքնավարության որոշ իրավունքներ ունեցող քաղաքներում դատավորներ էին քաղաքային ավագանու ներկայացուցիչները, որոնք նույնպես կամ ազնվականության ու բարձր հոգևորականության, կամ մեծատունների դասին էին պատկանում։ Մնում է աշխարհական ու հոգևոր ստորին դատարանների դատավորների հարցը։ Հայ քահանաները, սովորաբար, ժողովրդի միջից ելած մարդիկ են եղել։ Քահանա դառնալով, նրանք, ճիշտ է, անցել են արտոնյալ դասի շարքերը, բայց շատ կողմերով էլ մնացել են իրենց միջավայրի, իրենց շրջապատի մարդիկ։ Այն չափով, որչափով որոշ պայմաններ բավարարող ամեն հայորդի կարող էր դառնալ քահանա, այդ չափով միայն կարելի է ասել, որ ամեն հայորդի կարող էր դառնալ դատավոր։ Աշխարհական ստորին դատարանի դատավորները կամ հատուկ պաշտոնյաներն էին՝ քաղաքներում, կամ գեղջավագները՝ գյուղում։ Սրանք էլ, անշուշտ, ունևոր խավի ներկայացուցիչ-

22 Դատաստանագիրք հայոց, էջ 26։

23 Kommentar, էջ 362։

ներ են։ Բայց պետք է նկատի ունենալ, որ աշխարհական ու հոգևոր ատորին դատարանները երկրորդական նշանակություն ունեին։ Արդարադատությունն իրականացնող հիմնական օղակը իշխանական ու եպիսկոպոսական դատարաններն էին, իսկ սրանք գտնվում էին տիրապետող դասակարգի ձեռքին։

Այսպիսով, սոցիալական պայմանի տեսակետից դատավոր կարող էր լինել ոչ ամեն հայորդի, այլ տիրապետող դասակարգի ներկայացուցիչը։

Դատաստանագրքում սահմանված է, որ դատավորը պետք է լինի «կատարեալ հասակաւն»[24], բայց չի նշված, թե դատավորի համար քանի տարին պետք է համարել կատարյալ հասակ։ Քանի որ, ըստ Դատաստանագրքի, լրիվ, կատարյալ չափահասություն է համարվում 25 տարեկան հասակը, ուրեմն պետք է ընդունել, որ դատավոր կարող էր լինել 25 տարեկանից ոչ ցածր անձը։

Միջնադարում, գոնե տեսականորեն, կրթական-բարոյական շատ բարձր պահանջներ են ներկայացվել դատավորին։ Կյանքում այդ հաստատության նշանակալի դերից բխող հասարակական ուշադրությունը նրա նկատմամբ և արդարադատության իրականացման փորձի հասարակական ամփոփումը՝ իր գլխավոր արդյունքներով նույնանման տարբեր երկրներում ու տարբեր ժամանակներում, պայմանավորել են գրեթե նույնանման պահանջներ դատավորի նկատմամբ բոլոր երկրներում ու բոլոր ժամանակներում։

Երկրորդ դարի հռոմեացի իրավաբան Գելիուսի պատկերացմամբ դատավորը պետք է լինի լրջմիտ, աստվածավախ, խիստ, անկաշառ, շողոքորթության չենթարկվող, հանցագործների նկատմամբ ներողամտությունից հեռու, ուշադիր, ջանասեր, արդարության ու ճշմարտության ուժով ու վեհությամբ վախ ներշնչող և այլն[25]։ Ուսումնասիրողներն արդեն նշել են[26], որ աստվածուհի Յուստիցիայի երկրային տեղապահների նկատմամբ Գելիուսի այս պատկերացումները միայն նրա անձնական հայացքները չէին, այլ ընդհանուր ըմբռնում։ Հռոմեական դատավորը ավելի արդար չէր կայսրության «humilioros»-ների նկատմամբ, քան ավատապետական բալյին՝ ֆրանսիական շինականների, բայց նրան էլ նույն պահանջն է ներկայացվում։ Մխիթար Գոշին ժամանակակից ֆրանսիացի ականավոր իրավաբան Ֆիլիպ Բոմանուարը գրում է, որ դատավորը պետք է օժտված լինի տասը առաքինություններով. պետք է լինի իմաստուն, աստվածասեր, հանգիստ ու բարի, համբերող ու լսող, իր սենյորի հրամաններին ենթարկվող, գիտուն, ընդունակ ու հնարամիտ և այլն[27]։ Մխիթար Գոշը ևս պահանջում է, որ դատավորը լինի հմուտ, քաջուսումն, հանճարեղ, գիտուն, օրենսգետ, բարի, առաքինի, աննախանձ, ուշիմ, զգաստ, անաշառ, համբերող, անկաշառելի և այլն[28]։ Այն խիստ բարձր ու պատասխանատու դերը, որ խաղում է դատավորը մարդու կյանքում հանգամանքների հայտնի բերումով, բնական

---

24 Դատաստանագիրք հայոց, էջ 25։

25 Տես Geleius A., Noctium atticarum XIV, 4.

26 К. И. Новицкая. Отражение социальной структуры позднеримского общества на судопроизводство, «Вестник древней истории», 1968, № 4, էջ 138, տե՛ս նաև նույնի «Аттические ночи» Авла Геллия как исторический памятник II в., ВДИ, 1960, № 3, էջ 145—154, նաև Р. Ю. Виппер. Моральная философия Авла Геллия, ВДИ, 1948, № 2, էջ 58—64։

27 Տե՛ս «Хрестоматия памятников феодального государства и права стран Европы», М., 1961, էջ 580—583։

28 Դատաստանագիրք հայոց, էջ 26 և այլուր։

ու անհրաժեշտ են դարձնում նրա կրթական-բարոյական դրական նկարագիրը, մանավանդ ֆեոդալական կարգերի այն շրջանում, երբ դատավորը որոշում էր կայացնում ավելի շուտ իր իրավարմբռնման համաձայն, քան թե օրենքով։

Բոլոր դարաշրջանների համար ընդհանուր պահանջի հետ միասին յուրաքանչյուր դարաշրջան իր առանձին պահանջն է ներկայացրել դատավորի բարոյական նկարագրին։ Եվ քանի որ որևէ դարաշրջանի բարոյական տիրապետող ըմբռնումները տիրապետող դասակարգի բարոյական ըմբռնումներն են եղել, ուստի դատավորի բարոյական նկարագիրը որոշվել է, ընդհանուր առմամբ, վերջինիս չափանիշով, այն հատուկ չափանիշով, որը կաղապարված լինելով սոցիալ-տնտեսական իշխող հարաբերությունների ոլորտում, ընդունել է նաև դարաշրջանի առանձին բարոյական պահանջի տեսք։ Զարգացած ֆեոդալական կարգերի համար դատավորին ներկայացվող դարաշրջանի բարոյական առանձին այդ պահանջի լավագույն ձևակերպումներից մեկը տվել է Բոմանուարը. դատավորը պետք է լինի իր սենյորի հրամաններին ենթարկվող։

Դատավորի վարձատրությունը: Մխիթար Գոշի Դատաստանագիրքը սահմանում է. «Եւ արդ՝ նախ զայս եւս տեսցուք, զի հարկաւոր իսկ է դատաւորաց յաղագս աշխատութեան դատաստանին թօշակս մտից լինել, զի մի անպտուղ գործ նոցա կարծիցի եւ տաղտկացեալ ի բաց կացցեն ի դատելոյ»[29]։ Խոսքը եկեղեցական դատավորներին վարձատրելու մասին է։ Այդ վարձատրությունը պետք է լինի եկեղեցու դատավորների ապրուստի միջոցը և օգտագործվի նաև հոգևոր-եկեղեցական նպատակներով. «զի ինքեանք կերակրիցին եւ հոգեւորայէս ի գործ եկեղեցի ածցեն»[30]։ Դատաստանագրքի երեք խմբագրություններն էլ, ի վարձատրություն հոգևոր դատավորներին, հատկացնում են անժառանգ մեռնողների գույքը։

| ԱԲ խմբագրություն | Գ խմբագրություն |
|---|---|
| Թ՚է մեռանիցի այր ոք եւ ուստր ոչ իցէ նորա եւ ոչ դուստր, եւ ոչ այլ ոք ի ցեղէ հարց նորա, ժառանգութիւն նորա դատաւորաց լիցի թոշակ[31]։ | Եթէ մեռանիցի այր ոք և ուստր ոչ ունիցի և ոչ դուստր և ոչ այլ ոք ի ցեղից հարց նորա, ժառանգութիւն եպիսկոպոսաց լիցի[32]։ |

Որ ԱԲ խմբագրություններում խոսքը եկեղեցու դատավորների մասին է, երևում է ոչ միայն հոդվածի ընդհանուր իմաստից, այլև նրանից, որ ԱԲ-ի «դատաւորաց» բառին Գ-ում համապատասխանում է «եպիսկոպոսաց» բառը։

Տիրազուրկ ժառանգությունը եկեղեցու դատավորների միջև Դատաստանագիրքը բաժանում է հետևյալ կերպ.

| ԱԲ խմբագրություն | Գ խմբագրություն |
|---|---|
| Բայց ըստ այսմ օրինակի արասցեն. զի թէ ի սեփական վիճակի կաթողիկոսի իցէ վախճանեալն անժառանգ, հայրապետին լիցի ժառանգութիւնն. | Բայց այսպէս արասցեն. զի եթէ ի կաթողիկոսաց վիճակ եղիցի անժառանգ վաղճանեալն, կաթողիկոսին եղիցի ինչքն, և եթէ յեպիսկոպոսին՝ |

29 Անդ, էջ 82։

30 Անդ,

31 Անդ։

32 Մատենադարան, ձեռ. № 485, թ. 28ա։

եւ եթէ ի վիճակի եպիսկոպոսի իցէ՝ յերիս բաժանեսցի—հայրապետին եւ եպիսկոպոսին եւ քահանայից ժողովրդեանն։ Եւ թէ վարդապետ ոք ի նահանգին իցէ եւ զնոյն աշխատութիւն կրէ դատաստանի՝ մասն լիցի եւ նմա. նովին չափելով այլոցն[33]։

եպիսկոպոս երեք բաժին առնէ զինչս մեռելոյն՝ և զմինն իւրն առցէ, և զմիւսն կաթողիկոսին տացէ, և զմիւսն՝ այլ քահանայիցն. և եթէ մին վարդապետ կենա, ի վեց բաժնեն՝ զմինն նմա տան և զայլն ապա երեք բաժին արասցեն[34]։

*Ըստ ԱԲ խմբագրության վարդապետն ստանում է գույքի մեկ քառորդը, ըստ Գ խմբագրության՝ մեկ վեցերորդը։*

*Դժվար չէ նկատել, որ եկեղեցու դատավորներին հատկացվող այդ եկամուտը ոչ միայն դիպվածային էր, այլև աննշան, և եթե հնարավոր էր դրանով հոգևոր-եկեղեցեկան որոշ կարիքներ հոգալ, ապա անհնար էր գոյություն ապահովել։ Ուրեմն, պետք է ընդունել, որ եկեղեցու դատավորների ապրուստի միջոցը տիրազուրկ ժառանգությունը չէր։ Հիրավի, ինչպես գիտենք, եկեղեցու դատավորներն էին կաթողիկոսը, եպիսկոպոսը (նաև վարդապետը), քահանան։ Սրանք միայն դատավորներ չէին, այլ ընդհանրապես հոգևոր սպասավորներ, եկեղեցու պաշտոնյաներ միաժամանակ և որպես այդպիսիք նյութապես ապահովված էին եկեղեցու միջոցների՝ եկամուտների հաշվին։ Ի դեպ նշենք, որ սկսած Կոստանդին Մեծից տիրազուրկ ժառանգությունը համարվել է եկեղեցու սեփականությունը։ Այս կարգը գործել է նաև Հայաստանում՝ թե՛ մայր հայրենիքում, թե՛ գաղթաշխարհում, և պահպանվել է մինչև ուշ միջնադար, վերջին անգամ իր օրենսդրական արտահայտությունը գտնելով Աստրախանի հայոց դատաստանագրքում. «Եթէ ոք մեռանիցի, որ ոչ ունիցի օրինաւոր ժառանգ՝ ոչ որդի, ոչ եղբայր, ոչ կին և ոչ այլ ազգական, և ոչ իցէ արարեալ կտակ՝ ժառանգութիւնն նորին տացի եկեղեցւոյ»[35]։ Ինքնին եկեղեցու սեփականություն հանդիսացող այդ գույքը Մխիթար Գոշի Դատաստանագիրքը հատկացնում է եկեղեցու դատավորներին։ Ակնհայտ է, որ տիրազուրկ ժառանգությունը եկեղեցու դատավորների համար կարող էր լինել եկամուտի լրացուցիչ աղբյուր միայն։ Եթե դատավորների վարձատրության տակ Դատաստանագրքում նկատի է առնված եկեղեցու ընդհանուր եկամուտների հաշվին հայթայթվող գոյամիջոցները, ապա ավելորդ էր այն կոչել վարձատրություն, հատկապես դատավորական պաշտոնակատարության համար, իսկ եթե դատավորների վարձատրություն է համարվել տիրազուրկ ժառանգությունը, ապա Դատաստանագրքի հեղինակի համար էլ ակնհայտ էր, որ այն չէր կարող լինել գոյության միջոց։ Ուրեմն, մնում է ենթադրել, որ եկեղեցու ընդհանուր պաշտոնյաների համար դա եղել է վարձատրության հատուկ աղբյուր, հատկապես նրանց դատավորական ծառայությունների համար։ Վերը տեսանք, որ Մխիթարը անհրաժեշտ է համարում՝ «դատաւորաց, յաղագս աշխատութեան դատաստանին, թոշակս մտից լինել»։ Այս պայմաններում Մխիթարը պետք է որ մտածեր վարձատրության կայուն աղբյուր և նշանակալի չափ ապահովելու համար։ Մխի-*

---

33 *Դատաստանագիրք հայոց, էջ 82—83։*

34 *Մատենադարան, ձեռ. № 485, թ. 28ա։*

35 *«Դատաստանագիրք Աստրախանի հայոց», աշխատասիրությամբ Ֆ. Գ. Պողոսյանի, Երևան, 1967, էջ 71, հոդվ. 66։*

թար Գոշը, թվում է, մտածել է այդ ուղղությամբ, բայց ժամանակի պայմանները հնարավորություն չեն տվել արժանի ձևով լուծելու հարցը. «Եւ զի այժմ ոչ ունիմք թագաւոր եւ իշխան զի այսպիսի բարեկարգութիւն ի ձեռս նոցա լիցի, զայսոսիկ ի հայրապետէ մերմէ լցցուք, զի նա է գլուխ դատաւորաց եկեղեցւոյ»[36]։ Խոսքն, ուրեմն, թագավորական իշխանության կողմից պետական-պաշտոնական վարձատրության մասին է պաշտոնյաներին, հատկապես նրանց դատավորական ծառայությունների համար։ Բայց, որովհետև չկա թագավորական իշխանությունը, ապա հարցը, ընդհանրապես, թողնված է առկախ, թեև ծանրության կենտրոնը ինչ-որ չափով փոխադրված է կաթողիկոսական իշխանության վրա։ Սակայն, Դատաստանագրքում չի բացատրված նաև, թե կաթողիկոսը ինչ միջոցներից և ինչպես պետք է վարձատրություն սահմանի դատավորների համար։

Մխիթար Գոշի Դատաստանագրքից (ԱԲ խմբագրություն) արտաքուստ այն տպավորությունն է ստացվում, որ վարձատրություն չի սահմանվում աշխարհական դատավորների համար։ Դատաստանագրքի ԱԲ խմբագրություններում կարդում ենք. «Իսկ աշխարհականաց դատաւորաց մի լիցի մասն, զի ոչ բնաւորականք են դատաւորք, այլ պատահմամբ»[37]։ Այս վկայությունը պետք է քննվի փոքր-ինչ հանգամանորեն, որովհետև այն հենք է դարձել հայագիտության մեջ ընդունված մի տեսակետի, որը չի համապատասխանում իրականությանը։ Վերը բերված քաղվածքից Հ. Կարստը եզրակացնում է, որ Մխիթար Գոշի համար թագավորն ու իշխանները պատահական, ոչ-սկզբնական դատավորներ են, որոնց ինչ-որ չափով միայն լրացուցիչ, օժանդակ դատական դեր է տրված[38]։ Քաղվածքում, սակայն, խոսքը ոչ թե առհասարակ աշխարհական դատավորների, ոչ թե թագավորի, իշխանների, տանուտերերի կամ աշխարհականներից հատկապես նշանակված պետական-պաշտոնական դատավորների մասին է, այլ աշխարհականներից ընտրվող այն դատավորների, որոնք իրավունքի պատմության մեջ հայտնի են միջնորդ դատավոր անունով։ Մխիթարի համար թագավորն ու իշխանները նույնքան իսկական, նույնքան բնական դատավորներ են, որքան և հոգևոր դատավորները՝ կաթողիկոսը, եպիսկոպոսը և այլք։ Որ քննվող հատվածում խոսքը միջնորդ դատավորների մասին է, հաստատվում է, ի թիվս այլ փաստերի, նաև ԱԲ և Գ խմբագրությունների համապատասխան հատվածների համադրությամբ։

ԱԲ խմբագրություն

Իսկ աշխարհականաց դատաւորաց մի լիցի մասն, զի ոչ բնաւորականք են դատաւորք, այլ պատահմամբ։ Ջի թէ ոք զկնի վճարման դատաստանին տեսեալ զաշխատութիւն նոցա տացէ ինչ նոցա, այնու շատասցին, այլ մի ինչ աւրինաւոր լիցի նոցա, զի առաջ-

Գ խմբագրություն

Իսկ աշխարհական դատաւորաց ոչ տան մասն, վասն զի այսօր են և վաղն չեն: Ապա եկեղեցոյ դատաւորք հայրք են հագոց և մարմնոց և նոքա պարտին հատուցումն առնել նոցեցնոց։ Իսկ սիրոյ աղագաւ վասն աշխատութեան դատաստանին տացեն

36 Դատաստանագիրք հայոց, էջ 82։

37 Անդ, էջ 83։

38 Kommentar, էջ 341։ Աշխարհական դատարանների դերը երկրորդական են համարում նաև Վ. Բաստամյանցը («Դատաստանագիրք հայոց», «Յառաջաբանութիւն», էջ 124—126, 131 և այլուր), Խ. Սամուելյանը («Մխիթար Գոշի Դատաստանագիրքն ու հին հայոց քաղաքացիական իրավունքը», Վիեննա, 1911, էջ 121), Ն. Ադոնցը («Армения в эпоху Юстиниана», 1908, էջ 447) և այլք։

| | |
|---|---|
| նորդաց աւրինաւորն թողացու յաղագըս հոգեւոր հաստուցմանն[39]։ | մասն ինչ մարմնաւոր դատաւորաց, այլ ոչ աւրինաւք, այլ՝ ըստ պատահման[40]։ |

Ուշադրություն դարձնենք ընդգծված տողերի վրա, որոնցից շատ պարզ երևում է, որ ԱԲ (նաև Գ) խմբագրության խոսքը աշխարհական դատավորների մասին՝ «վի ոչ բնաւորականք են դատաւորք, այլ պատահմամբ», վերաբերում է ոչ թե ընդհանրապես աշխարհական դատավորներին, այլ միջնորդ դատավորներին, որովհետև Գ խմբագրությունն ուղղակի ասում է, որ վարձատրություն պետք է տրվի ոչ թե մարմնավոր պատահական դատավորներին, այլ մարմնավոր օրինական դատավորներին։ Այլ կերպ՝ Գ խմբագրությունը, որոշակիություն մտցնելով ԱԲ խմբագրության ձևակերպման մեջ, հստակորեն կանազանում է մարմնավոր, աշխարհական երկու տեսակ դատավոր՝ օրինական և պատահական։ Թվում է, կասկած չի կարող լինել այն մասին, որ օրինական դատավորը թագավորն է, իշխանը կամ նա, ով կոչված է ի դատավորություն օրենքով, իշխանության կամքով և ոչ թե երկու մարդու ցանկությամբ։ «Ըստ պատահման» կամ «պատահմամբ» դատավորները նրանք են, ովքեր «այսօր են և վաղն չեն», որոնք էլ հենց միջնորդ դատավորներն են։ Հնում եղած սովորության համաձայն վիճող կողմերը երբեմն դիմում էին ոչ թե ի պաշտոնե դատավորներին, այլ փոխադարձ համաձայնությամբ իրենց համար դատավոր էին ընտրում տեղի մարդկանցից, որոնք հարգված էին շրջապատում որպես ազնիվ, արդարամիտ ու իրավունքը գիտեցող անձինք։ Այս անձը դատավոր էր միայն տվյալ գործով և վեճը լուծելուց հետո ինքնաբերաբար պաշտոնաթող էր լինում։ Սրանք «բնավորական», «օրինաւոր» դատավորներ չէին, այլ՝ «պատահական» և Գ խմբագրությունը ճշտագույնս բնութագրել է նրանց որպես դատավորներ, որ «այսօր են և վաղն չեն», այնինչ թագավորը, իշխանը բնական դատավորներ են «և այսօր և վաղն», չեն ընտրված վիճող կողմերի ցանկությամբ, այլ դատավոր են անկախ կողմերի ցանկությունից, դուցե և հակառակ նրանց ցանկության, չեն կոչված միայն տվյալ եզակի վեճը լուծելու, այլ լիազորված են քննելու բոլոր գործերը, որ կլինեն նրանց պաշտոնավարության ընթացքում։

Միջնորդ դատավորները, իրենց ծառայությունների համար, պաշտոնապես չէին վարձատրվում ո՛չ իշխանությունների կողմից և ո՛չ էլ ընտրողներից։ Ուստի պատահական չէ, որ մեր Դատաստանագիրքը ևս նրանց վարձատրություն չի սահմանում։ Պետք է նկատի ունենալ մի հանգամանք ևս. գուցե, որ հատկացվում է հոգևոր դատավորներին ի վարձատրություն, եկեղեցու սեփականությունն է, և բնական է, որ դրանից չի տրվում աշխարհական, այն էլ օրինավոր դատավորներին մի գործի համար, որը զուտ «մարմնական» է և կապ չունի «հոգևոր հատուցման» հետ։ Սակայն Դատաստանագիրքը թույլ է տալիս, վեճը լուծելուց հետո, նվիրատվություն անել միջնորդ դատավորին։

Ասացինք, որ «բնական» և «օրինօք» աշխարհական դատավորների վարձատրության մասին Մխիթարը չի խոսում այն պատճառով, որ չկա սրանց վարձատրող մարմինը՝ թագավորական իշխանությունը։ Բայց թագավորական իշխանության չգոյությունը պետք է համարել անկանոն վիճակ, ուրեմն՝

39 Դատաստանագիրք հայոց, էջ 83։

40 Մատենադարան, ձեռ. № 485, թ. 28բ։

*խոսքն այն մասին է, թե ինչպիսին էր իրերի դրությունը կյանքի բնականոն ընթացքի դեպքում, երբ կար թագավորական իշխանությունը կամ իշխանապետությունը։*

*Մխիթար Գոշի Դատաստանագրքի խմբագրությունների համապատասխան հատվածների համադրությունը նպաստում է այս հարցին պատասխանելուն, ուստի համադրենք.*

| ԱԲ խմբագրություն | Գ խմբագրություն |
| --- | --- |
| *Եւ զի այժմ ոչ ունիմք թագաւոր եւ իշխան, զի այսպիսի բարեկարգութիւն ի ձեռս նոցա լիցի, զայսոսիկ ի հայրապետէ մերմէ լցցուք, զի նա է գլուխ դատաւորաց եկեղեցւոյ[41]։* | *Եւ արդ, նախ զայս ես տեսցուք, զի պարտ է, որ դատաւորք հոռք և պարգեւք ունիցին ի թագաւորաց, զի մի ձանձրասցին ի դատելոյն. զնոյն և եկեղեցոյ դատաւորքն, որ են եպիսկոպոսք, պարգեւս մեծամեծս կալցեն ի կաթողիկոսէն լիապէս[42]։* |

*Ըստ Դատաստանագրքի ընդհանուր սկզբունքը հետևյալն է. եկեղեցական դատավորները պետք է վարձատրվեն հոգևոր իշխանության կողմից, աշխարհական դատավորները՝ մարմնավոր։ Աշխարհական դատավորները՝ թագավորը, իշխանը, գեղջավագը և այլք նյութապես ապահովված էին անկախ դատավորի համար սահմանված վարձատրությունից։ Բայց եթե Դատաստանագիրքը վարձատրություն է սահմանում հատկապես նրանց դատավորական ծառայության համար, ուստի այն պետք է, որ նկատի ունեցած լիներ վարձատրության որոշ աղբյուր։ Դատաստանագրքի համապատասխան հոդվածում, որը նվիրված է այս հարցին (I, 1, Յաղագս վիճակի դատաւորաց), այդ աղբյուրը չի նշված։ Բայց մի քանի հոդված և որոշակի տեղեկություններ, որոնք վերաբերում են մի փոքր ավելի ուշ ժամանակաշրջանի, թվում է, թույլ են տալիս նշելու այդ աղբյուրը։*

*Դատաստանագրքի երկրորդ մասի առաջին հոդվածը (այլ հոդվածներ ևս) թագավորական դատարանին ընդդատյա գործերով սահմանում է տուգանք դատապարտյալից՝ հօգուտ թագավորի։ Դրանով փոխհատուցվում էր թագավորի այն ծառայությունը, որ նա մատուցում էր արդարադատության իրականացմանը։ Այդ տուգանքը մուծվում էր հավանաբար* fiscus*։ Այս վերջին հարցը ուսումնասիրված չէ, և, չգիտենք, տարբերվո՞ւմ էին, արդյոք, հին Հայաստանում* aerarium*-ը* fiscus*-ից, թեև պետք է ենթադրել, որ գոնե զարգացած ավատատիրության շրջանում եղել է այդ տարբերությունը և դատապարտյալից գանձվող տուգանքը այն աղբյուրներից մեկն էր, հավանաբար ոչ խիստ նշանակալի, որից գոյանում էր* fiscus*-ը։ Սկսած այն ժամանակներից, երբ պետական իշխանությունը (թագավորը) մասնակցում է կամ իր վրա է վերցնում արդարադատության իրականացումը, նա այդ անում է կողմերից մեկի հաշվին։ Դա ընդհանուր երևույթ է մինչև նոր ժամանակները։ Ըստ դատաստանագրքի այդպես էր նաև Հայաստանում։ Քանի որ հայկական դատարանային համակարգի առաջին (թագավորական) դատարանի համար դատավորի վարձատրության սկզբունքը վերոհիշյալն էր, ապա այդպես պետք է լիներ նաև հաջորդ օղակների դատավորների համար։ Դատաստանագրքում թեև չկան փաստեր*

41 *Դատաստանագիրք Հայոց, էջ 82։*

42 *Մատենադարան, ձեռ. № 485, թ. 28ա։*

այդ մասին, բայց Հովհաննես Երզնկացին և Գրիգոր Տաթևացին հաղորդում են անհրաժեշտ տեղեկություններ։

Հովհաննես Երզնկացին (Ծործորեցին) Մատթեոսի ավետարանի իր մեկնության մեջ, Ե. 25-ի[43] կապակցությամբ գրում է. «Եւ նախ ասացեալ հաշտութիւնն հաստատէ, թէ ընդ ումէք լիցի, ասէ, վէճ հակառակութեան և ոսոխ արձանացի քեզ, զի յափշտակեալ ի քոյոցն յինքն շոպեսցէ, քանզի այս է ոսոխն, և բռնաբար ի դատաստան քարշէ, տուր, ասէ, զհաշիւն նմա մինչ դեռ ի ճանապարհի ես և տակաւին հեռի ի դատաւորին առենէ. այս է՝ զոր ինչ պահանջէ ի քէն, տուր։ Զի զայս արարեալ երկու մեծագոյն օգուտս շահեսցիս, մի՝ զի անձինդ տէր լիցիս և ի վիշտս ոչ անկանիցիս և երկրորդ՝ զի ի քէն լինի ուղղութիւնն և ոչ ի նորա բռնութենէն։ Վասն այսորիկ զկշիռ իրաւանց դատաստանին ի քեզ բերցես և սակաւ տրօք ի յոսոխէն ազատեսցիս։ Ապա թէ ոչ անսաս՝ ոչ նմա վնասես, այլ քեզ. զի որ առանձինն զքեզ արդար կարծէիր, ի հրապարակ մտեալ անիրաւ գտանիս՝ նորա մատնելովն դատաւորին և դատաւորն՝ դահճին և նա արկանիցէ ի բանդ, և ոչ ելանիցես անտի մինչև հատուցանիցես զյետին նաքարակիտն, այսինքն՝ բնաւին աղքատանայցես, **մինչև զյետին դանգն տուգանս տալով զիրաւունս ոսոխին, զոր ոչ խորհեցար նախ, և զդատաւորին և զսպասաւորաց նորին»**[44]։

Արդ՝ ուշադրություն դարձնենք մեջբերման ընդգծված մասի վրա, նկատի ունենալով, որ մեկնություններում օրինակները, սովորաբար, բերվում են ժամանակակից իրական կյանքից՝ միտքն ավելի ցցուն, խոսքն ավելի համոզիչ դարձնելու նպատակով։ Ծործորեցին ասում է, որ դատարանի կողմից անիրավացի ճանաչված կողմը, մյուս կողմի վնասը փոխհատուցելուց բացի, տուգանք էր վճարում դատավորին և նրա սպասավորներին։ Պաշտոնապես գանձվող այս տուգանքը դատավորի պաշտոնական վարձատրությունն էր։

Գրիգոր Տաթևացին իր քարոզներից մեկում ասում է. «Եւ զինչ իցէ հնար գողին։ Այն՝ զոր յօրէնսն հրամայէ աստուած. Եթէ գտցին գողունիքն ի ձեռս գողին և ըմբռնեն, **միոյն կրկին առնուն ի գողէն և տան զմին ի տէր ընչիցն և զմին իշխանին և գանեալ թողցեն**: Իսկ թէ կերեալ լինին գողունիքն և գտանի գողն, **միոյն չորս կամ հինգ առնուն ի գողէն և տան ի տեարս և յիշխանն»**[45]։ Տաթևացու վկայությունը գնահատելու համար անհրաժեշտ է մեջ բերել մովսիսական այն օրենքը, որը մեկնում-բացատրում է նա. «Իսկ եթէ գողասցի ոք արջառ կամ ոչխար, եւ սպանցէ կամ վաճառեսցէ, հինգ արջառ ընդ արջառոյն տուժեսցի և չորս ոչխար ընդ ոչխարին… Իսկ եթէ ըմբռնեսցի և գտցի ի ձեռին նորա գողօնն՝ յարջառոյն յիշոյ մինչեւ ցոչխարն կրկին տուժեսցի»[46]։ Ինչպես տեսնում ենք, մովսիսական օրենքում ոչ մի խոսք չկա ոչ իշխան-դատավորի և ոչ էլ նրան որևէ տուգանք վճարելու մասին։ Ու-

---

43 «Լէր իրաւախոհ ընդ ոսոխի քում վաղագոյն, մինչ դեռ իցես ընդ նմա ի ճանապարհի. գուցէ մատնիցէ զքեզ ոսոխն դատաւորի. եւ դատաւորն՝ դահճի եւ արկանիցիս ի բանտ։ Ամէն ասեմ քեզ, ոչ ելանիցես անտի մինչեւ հատուցանիցես զյետին նաքարակիտն»։ Նաքարակիտը դրամական միավոր է։

44 Մատենադարան, ձեռ. № 2687, թ. 55բ, տպագիրը՝ «Մեկնութիւն սուրբ Աւետարանին որ ըստ Մատթէոսի…», Կ. Պոլիս, 1825, էջ 116։

45 «Գիրք քարոզութեան որ կոչի Ամառան հատոր», Կ. Պոլիս, 1741, էջ 26։

46 Ելք, ԻԲ, 1—4։

*րեմն, այն, ինչ Տաթևացին ավելացրել է մովսիսական օրենքին որպես դրա մեկնություն-բացատրություն, վերցված է ժամանակի իրական կյանքից, դատա-իրավական առօրյայից։ Այս դեպքում էլ մեղադրյալից (անիրավացի կողմից) գանձվում է հատուկ տուգանք հօգուտ իշխանի, որը և նրա պաշտոնական վարձատրությունն էր հատկապես որպես դատավորի։*

*Հայաստանում, մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում, դատավորները՝ թագավորը, իշխանը, տանուտերը և այլք, նյութապես ապահովված էին անկախ դատավոր լինելու հանգամանքից, բայց որպես դատավորներ նրանց (գուցե նաև հոգևոր դատավորների) պաշտոնական վարձատրությունը այն տուգանքն էր, որ գանձվում էր մեղադրյալից (կամ անիրավացի կողմից) հատկապես հօգուտ դատավորի, ինչպես հետևում է Մխիթար Գոշի, Ծործորեցու և Տաթևացու վկայություններից։*

Х. А. ТОРОСЯН

## УСТРОЙСТВО СУДА В СРЕДНЕВЕКОВОЙ АРМЕНИИ

Из средневековых армянских первоисточников большую часть сведений об устройстве суда в средневековой Армении дает Судебник Мхитара Гоша (XII в.). Поэтому в данной статье преимущественно рассматривается устройство суда периода развитого феодализма.

Судебная система этого периода такова: *государственные суды*—царский (великокняжеский), княжеский и низшие суды; *феодальные суды*—сословный, господский; *церковные суды*—суд католикоса, епископа и священника.

Имеющиеся в Судебнике Мхитара Гоша сведения об устройстве суда можно сгруппировать в основном по трем пунктам: а) состав суда, права и обязанности членов суда, другие служители суда, б) личность и моральные качества судьи, г) вознаграждение судьи.

Суд коллегиален, в его составе должно быть не менее трех лиц: председатель—по имени которого называется данный вид суда, и заседатели. Судьей может быть только мужчина не моложе 25 лет. Он должен обладать высокими моральными качествами, быть честным, правдивым, объективным и т. д.

За исполнение своих обязанностей судья получал специальное вознаграждение за счет части штрафа, налагаемого на проигравшую процесс сторону.

KH. A. THOROSSIAN

## LA STRUCTURE DES TRIBUNAUX DE L'ARMENIE MEDIEVALE

Parmi les sources littéraires arméniennes médiévales c'est le Code de Mkhitar Goche (XII siècle) qui renferme les plus importants renseignements relatifs à la structure des tribunaux en Arménie médiévale;

aussi c'est la structure des tribunaux de la période du féodalisme développé qui est surtout l'objet de l'examen de l'auteur.

Le système des tribunaux de cette époque est le suivant: tribunaux d'Etat: tribunal royal (grand-ducal), tribunal princier et tribunal intérieur: tribunaux féodaux: tribunal de l'ordre et tribunal seigneurial; tribunaux d'Eglise: tribunal du catholicos (patriarcal), tribunal épiscopal et tribunal paroissial.

Les renseignements donnés par Mkhitar Goche dans son Code au sujet de la structure des tribunaux peuvent être groupés de la maniére suivante: a) constitution du tribunal, droits et devoirs des membres du tribunal, autres serviteurs du tribunal; b) la personne du juge et ses qualités morales; c) la rémunération du juge.

Le tribunal est collégial, il doit être formé d'au moins trois personnes: le président, qui donne son nom à la forme donnée du tribunal, et les assesseurs. Le juge doit être un homme de plus de 25 ans, doue de hautes qualités morales, honnête, digne de foi, juste, etc..

Pour l'exécution de ses fonctions le juge recevait en rémunération spéciale une partie de l'amende payée par la partie perdante.